հանդերձ պարսիկ գործակալօք, ամս քսան և վեց. և յետ նորա որդի նորին, որ անուանեցաւ Շապուհ, որ լինի՝ արքայի մանուկ, ցթագաւորելն Տրդատայ, ամ մի։

## ՀԸ.

Կոտորումն ազգին Մանդակունեաց յԱրտաշրէ։

Բայց Արտաշրի լուեալ էր, թէ ոմն 'ի նախարարացն Հայոց առեալ յորդւոցն Խոսրովու, փախուցեալ ապրեցոյց։ Եւ քննեալ, թէ ով ոք նա իցէ, եղև վերահասու, թէ նա է Արտաւազդ յազգէն Մանդակունեաց. հրամայեաց զամենայն ազգն ջնջել սատակմամբ։ Քանզի 'ի գաղթելն Հայոց յԱրտաշրէ՝ գաղթին և նոքա ընդ ցեղս այլոց նախարարացն. և 'ի նուաճելն Արտաշրի զայլսն, դառնան և նոքա, և սատակին սրով ամենեքին։ Բայց կոյս մի գեղեցկադիտակ 'ի քերցն Արտաւազդայ գողացեալ Տաճատայ ուրումն, որ էր լեալ յազգէն աշոցան, 'ի զաւակէ Գուշարայ հայկազնոյ, փախուցեալ 'ի կեսարացւոց քաղաքին ապրեցուցանէր, ամուսնաւորեալ ընդ ինքեան վասն չքնաղագեղ կերպարանին։

## ՀԹ.

Յաղագս նահատակութեանն Տրդատայ յամս անիշխանութեան Հայոց։

Պատմէ զնահատակութեանցն Տրդատայ, նախ 'ի մանկութեանն յերիվար կամակար աշտանակեալ, և կորովի ձիավարեալ, և զէնս շարժեալ յաջողակաբար, և այլ պատերազմականս ուսանել ախորժակս. ապա ըստ պեղոպոնէսացւոց մեհենական հրամանին Ողիմպեայ 'ի մրցանակս ագոնին առաւելեալ քան զԿղիտոստրատոս հռոդացի, որ զվզէ նեթ կալեալ յաղթէր. դարձեալ և քան զԿերաստ արգիացի. զի նա զկճղակ եզին թափեաց, իսկ սա զերկուց ցլուց վայրենեաց միով ձեռամբ կալեալ զեղջերսն, թափեաց հանդերձ ընդվզեալ ջախջախմամբ։ Եւ 'ի ձիընթացս մեծի կրկէսին կառավարել կամեցեալ, 'ի հմտութենէ հակառակադրին ստուցեալ յերկիր անկաւ, և բուռն հարեալ արգել զկառսն. ընդ որ ամենեքին զարմացան։ Եւ 'ի պատերազմելն Գութաց ընդ

Գունթա, եղև սով սաստիկ. և յոչ գտելոյ շտեմարանաց՝ յարեան զօրքն 'ի վերայ և սպանին զնա. նոյնպէս և 'ի վերայ ամենայն իշխանացն դիմեցին: Իսկ Տրդատ միայն ընդդէմ կացեալ, չեթող զոք մտանել յապարանն Լիկիանոսի, առ որում ինքն Տրդատ էր:

Բայց Կարոս հանդերձ որդւովքն Կառինեաւ և Նումերիանոսիւ թագաւորեաց. և զօրաժողով եղեալ, ետ ճակատ ընդդէմ Պարսից արքային, և յաղթեալ՝ դարձաւ 'ի Հռոմ: Վասն որոյ բազում ազգս 'ի սատարութիւն կալեալ Արտաշրի, թիկունս արարեալ զանապատն տաճկաստանի, դարձեալ ետ ճակատ ընդ զօրս հռովմայեցւոց կրկին՝ աստի և անտի Եփրատու, յորմէ սպանաւ Կարոս 'ի Յոփնիս: Նոյնպէս և Կառինոս, որ 'ի վերայ Կոռնակայ չոգաւ յանապատ, ընդ որում և Տրդատ. և սատակեցաւ նա և զօրն, և մնացեալքն 'ի փախուստ դարձան: Յորում և Տրդատայ վիրաւորեալ երիվարն, ոչ աճապարեաց ընդ փախստեայսն, այլ առեալ զզէնն իւր և զկազմած ձիոյն, 'ի լուղ ընդ լայնատարած խորայատակն անցանէր ընդ Եփրատ 'ի բուն զօրսն իւրեանց, ուր Լիկիանոս էր: Ընդ նոյն աւուրս լինի սպանեալ և Նումերիանոս 'ի Թրակէ, և փոխանորդեալ զթագաւորութիւնն Դիոկղետիանոս: Իսկ որ ինչ 'ի նորա ժամանակն գործք, յայտնէ քեզ Ագաթանգեղոս:

## Ձ

Յայտարարութիւն սակաւուք ծննդեան և վարուց Գրիգորի և որդւոցն, 'ի Թղթոյն Արտիթեայ եպիսկոպոսի, որ վասն հարցմանն Մարկոսի միայնաւորի 'ի Յապռոճանի:

Այր ոմն 'ի Պարսից ոչ 'ի փոքունց և յաննշանից, որում անուն էր Բուրդար, գնացեալ անտի և եկեալ 'ի կողմանս Գամրաց, պանդխտեցաւ 'ի Կեսարիայ: Եւ առեալ կին 'ի հաւատացելոց, որում անուն Սոփի կոչիւր, քոյր ուրում մեծատան, որ Եւթաղիոս յորջորջէր, դարձաւ անդրէն գնալ յերկիրն Պարսից հանդերձ կնաւ իւրով. զորոյ զհետ հասեալ աներոյ նորա Եւթաղեայ, համոզեալ արգելոյր: Որոյ հանդիպեալ ծննդեանն մերոյ Լուսաւորչին, ըստ պատահման մտանէ առընթեր մանկանն. և 'ի հասանել աղետին՝ առեալ Եւթաղեայ զքոյր իւր և զայրն նորա հանդերձ մանկամբն 'ի կապադովկացւոց աշխարհն դառնայր:

Այլ զայս ամենայն գործէ յառաջատեսութիւնն Աստուծոյ, որպէս կամք են խնդիր առնել բանի, յաղագս որ 'ի մեզ փրկութեան ճանապարհ: Ապա թէ ոչ, որո՞վ յուսոյ ակն ունելոյ զմնացուկ պաշտաւնկ 'ի հաւատացելոց իշխանութեանն անուանէին, և Քրիստոսի ընծայէին հաւատով:

Բայց յորբունս հասեալ մանկանն, փեսայացուցանէ հաւատացեալ ումն այր, որում անուն էր Դաւիթ, 'ի դուստր իւր Մարիամ. որ յետ երից ամաց երկուց որդւոց լինելոյ, 'ի կամաց երկոցունց մեկնեալ 'ի միմեանց զատչին: Մարիամ հանդերձ մանկամբն կրտսերաւ 'ի վանս կանանց անկեալ կրօնաւորիւր. որոյ յորբունս հասեալ մանկանն, զհետ ընթանայ միայնաւորի մի, որում անուն էր Նիկոմաքոս, և նա առաքէ յանապատ: Իսկ անդրանիկն առ դայեկաց մնացեալ, որ ապա աշխարհական ամուսնացաւ: Բայց հայրն նոցին Գրիգոր անցեալ գնաց առ Տրդատ՝ զհայրենեացն հատուցանել պարտիս, կամ որպէս պարտ է ասել ճշմարտութեամբ՝ զառաքելութեան վիճակ մերոյ աշխարհիս և զքահանայութեանն հանդերձ մարտիրոսութեամբ վարժելով:

Բայց արդարև հօր սքանչելւոյ որդիք զարմանալիք առաւել քան զառաւել. զի ոչ նա խնդրեաց զորդին՝ յորժամ դարձաւ ընդ Տրդատայ, և ոչ նոքա չոգան առ նա. և այն գրեթէ վասն երկիւղի հալածանացն. բայց և ոչ 'ի քահանայանալն և 'ի փառաւորել հօրն երևեալ պերճացան նոքա: Վասն որոյ և ոչ նա յամեաց 'ի Կեսարիայ, այլ փութապէս դարձեալ՝ 'ի սեբաստացւոց քաղաքէն առեալ հաւաքել զնիւթ վարդապետութեանն: Այլ թէ և բազում աւուրս արարեալ 'ի Կեսարիայ, ոչ ինչ՝ զորոց զմտաւն ածէր՝ առնելոց էին, անպատիւն և անանցականին միայն սկելով. որք ոչ զպատիւն յինքեանս ձգէին, այլ պատիւն զհետ նոցա ընթացաւ, որպէս ուսուցանէ քեզ Ագաթանգեղոս:

## ՁԸ

*Եթէ ուստի և զիարդ ազգ Մամիկոնէից:*

Վախճանեալ Արտաշրի որդւոյ Սասանայ, թողու զթագաւորութիւնն Պարսից որդւոյ իւրում Շապհոյ: Ի սորա աւուրս եկեալ 'ի Հայս նախնի ազգին Մամիկոնէից յարևելից հիւսիսականէն, 'ի քաջա-

տոհմիկ և 'ի գլխաւոր աշխարհէ և ամենայն հիւսիսականաց ազգաց առաջին, առաւել իսկ զՉենացն՝ որ ունին զրոյց այսպիսի։

Յամս կատարման կենացն Արտաշրի, Արբոկ ոմն Չենբակուր, որպէս ասի 'ի նոցա լեզուն պատիւ թագաւորութեան. սորա երկու դայեկորդիք Բդղոխ և Մամգուն անուն կոչեցեալ, մեծ նախարարք։ Եւ չարախօսեալ Բդղոխայն զՄամգունայն, հրամայեաց թագաւորն Չենաց Արբոկ սպանանել զՄամգունն։ Զոր իմացեալ Մամգունայն, ոչ գայ 'ի կոչն արքայի. այլ փախուցեալ աղխիւ իւրով անկանի առ Արտաշիր թագաւորն Պարսից։ Եւ Արբոկ հռեշտակս առաքէ խնդրել զնա. և 'ի չլսելն Արտաշրի, պատերազմ 'ի վերայ նորա յօրինէ թագաւորն Չենաց։ Եւ իսկոյն մեռեալ Արտաշրի, թագաւորէ Շապուհ։

Արդ թէպէտ և ոչ տայ Շապուհ զՄամգուն 'ի ձեռն տեառն իւրոյ, այլ և ոչ յԱրեաց երկիրն թողու. բայց ամենայն աղխիւն իւրով առաքէ զնա, իբրև վտարանդի, առ գործակալս իւր որ 'ի Հայս։ Եւ յղէ առ թագաւորն Չենաց՝ ասելով, թէ Մի՛ թուեսցի քեզ դժուար, զի 'ի ձեռս քո ոչ կարացի տալ զՄամգուն. վասն զի երդուեալ էր նմա հօրն իմոյ 'ի լոյս արեգական. այլ վասն անխռով զքեզ առնելոյ՝ հալածեցի զնա յաշխարհէս իմմէ յեզր երկրի և 'ի մուտս արեւու, որ հաւասար է նմա մահու. և արդ մի՛ լիցի պատերազմ ընդ իս և ընդ քեզ։ Եւ զի քան զամենայն բնակեալս 'ի վերայ երեսաց երկրի խաղաղասէր ասեն գոլ զազգն Չենաց, յանձն առնու առնել զհաշտութիւն. ուստի յայտ իսկ է, թէ են արդարև խաղաղասէր և կենասէր ազգ Չենաց։

Աքանչելի է և աշխարհն առատութեամբ ամենայն պտղոց, և գեղեցիկ բուսովք զարդարեալ, քրքմաւէտ և սիրամարգաշատ և բազմամետաքս, անբաւութիւն յամուրաց և հրէշից, և որ էշայծեմունդ անուանեն. ուր հասարակաց կերակուր ասեն զառ մեզ պատուական և սակաւուց ճաշակելիս, զփասեան և զպոր, և այլ այսպիսիք։ Այլ զականց և զմարգարտաց ոչ ասեն գիտել զհամար մեծամեծացն. իսկ պատուականքս առ մեզ զգեստուց և սակաւուց ագանելիք, հասարակաց նոցա է զգեստ։ Եւ այս յաղագս աշխարհին Չենաց։

Իսկ Մամգունայ յոչ կամաց եկեալ յաշխարհս մեր, հանդիպեցաւ գալստեանն Տրդատայ. և ոչ դարձաւ ընդ զօրս Պարսից, այլ ամենայն աղխիւն իւրով ընդ առաջ գնաց նմա մեծաւ պատարագաւ. և Տրդատ

ընկալաւ զնա, բայց զկնի իւր 'ի պատերազմ ոչ եառ յերկիրն Պարսից. այլ ետ տեղի աղխին նորա և ռոճիկ 'ի կերակուր, փոփոխելով տեղ 'ի տեղւոջէ ըբովանդակ ամս։

## ՁԲ.

Նահատակութիւնք Տրդատայ 'ի թագաւորութեանն յառաջ քան զհաւատալն։

Քանզի ոչ է պատմութիւնն ճշմարիտ առանց ժամանակագրութեան, վասն որոյ մանրախուզիւ քննեալ, գտաք զթագաւորելն Տրդատայ յերրորդ ամի Դիոկղետիանոսի, և գալ այսր հանդերձ մեծաւ զօրու։ Որոյ հասեալ 'ի Կեսարիա յոլովք 'ի նախարարացն ընդ առաջ լինէին։ Նա ելեալ յաշխարհս, գտանէ զՕտայ սնուցեալ զքոյր իւր Խոսրովիդուխտ, և պահեալ զգանձն ամրոցաւն հանդերձ յոյժ երկայնմտութեամբ. քանզի էր արդար և համբեր, ժուժկալ և առաւել իմաստուն. զի թէպէտ և ոչ ծանեաւ զճշմարտութիւն յաղագս Աստուծոյ, սակայն զստութիւն կռոցն գիտաց։ Այնպէս էր և սան նորա Խոսրովիդուխտ, կուսան համեստ որպէս զօրինաւոր ոք, և ոչ ամենևին ունել անդուռն բերան նման այլ կանանց։

Իսկ Տրդատ 'ի հազարապետութիւն Հայոց զՕտայն կացուցանէ, շնորհակալութեամբ պատուէ զնա։ Նա առաւել ևս զիւր դայեկորդին, զմանդակունի Արտաւազդ, վասն լինելոյ նորա նմա պատճառ փրկութեան և հայրենականացն հասելոյ փառաց. յաղագս որոյ 'ի ձեռն նորա տայ զսպարապետութիւն զօրացն Հայոց։ Նորին աղագաւ և զՏաճատ քեռայր նորին իշխան 'ի վերայ գաւառին Աշոցայ կարգէ։ Սա էր որ յապայսն զգացոյց աներոյն իւրոյ Արտաւազդայ, և նա արքայի, նախ զԳրիգոր Անակայ լինել որդի, և ապա զկնի վասն որդւոցն Գրիգորի, որպէս հմուտ եղեալ 'ի կեսարացւոց քաղաքին բնակելով։

Իսկ քաջին Տրդատայ երագապէս և բազում ճակատս տուեալ, նախ 'ի Հայս և ապա 'ի Պարս, իւրով անձամբ առնէր զյաղթութիւնն։ Որ 'ի միում նուագի առաւել քան զՆղխանանն զայն 'ի հնումն, կանգնեաց զնիզակն յօգնական համաթիւ վիրաւորաց։ Դարձեալ յերկրորդումն՝ կորովեացն Պարսից զփորձ առեալ զաստիկութեան սկզբին և կուռ վառուածոցն, բազում վէրօք պատեալ զձին՝ սատակեցին նետաձ-

գութեամբք․ որոյ գարկուցեալ յերկիր ընկենոյր զարքայն։ Իսկ նորա յարուցեալ և 'ի հետ յարձակեալ, փոխանակ իւր զբազումս ընկենոյր 'ի թշնամեացն, և զմիոյ ուրումն զձի կալեալ, արիաբար աշտանակեալ․ դարձեալ յերկրորդին միւսանգամ կամաւոր լեալ հետի, սուսերաւ զերամակս փղացն պուղէր։ Եւ այսպիսի նահատակութեամբք յամեալ 'ի Պարս և յասորեստան, անդր ևս քան զՏիգրիս յարձակի։

## ՁԴ․

*Յաղագս առնլոյ կին Տրդատայ զԱշխէն, և Կոստանդնի զՄաքսիմինայ, և թէ որպէս հանդիպեցաւ հաւատոց։*

Եկեալ Տրդատայ յաշխարհս, առաքէ զՍմբատ ասպետ, զհայր Բագարատայ, ածել զկոյսն Աշխէն՝ դուստր Աշխադարայ՝ իւր 'ի կնութիւն․ որ ոչ ինչ նուազ էր կոյսն արքային հասակի։ Եւ հրամայէ գրել զնա արշակունի, և զգեցուցանել ծիրանիս և թագ կապել, զի հարսնացի արքայի։ Յորմէ եղև որդի Խոսրով, ոչ համեմատ հասակի ծնողաց իւրոց։

Ընդ նոյն աւուրս լինին հարսանիք և Մաքսիմինայ դստերն Դիոկղետիանոսի 'ի Նիկոմիդիա, փեսայանալով նմա Կոստանդիանոսի կեսարի, որդւոյ Կոստայ թագաւորին Հռոմայ, որ ոչ էր 'ի դստերէն Մաքսիմիանոսի, այլ Հեղինայ պոռնկէ ծնեալ։ Այս Կոստանդիանոս բարեկամացեալ 'ի հարսանիսն ընդ Տրդատայ մեր թագաւորի։ Եւ յետ ոչ բազում ամաց մեռեալ Կոստանդ, փոխանորդ նմա առաքէ Դիոկղետիանոս զնորին որդի և զիւր որդիացեալն Կոստանդիանոս։

Սա յառաջ քան զթագաւորելն, մինչ դեռ կեսար էր, պարտեալ 'ի մարտն, և տրտմութեամբ մեծաւ ննջեալ, երևութացաւ նմա 'ի քուն խաչ աստեղեայ յերկնից, պարունակեալ գրով, ասէ․ Այսու յաղթեա․ զոր արարեալ սիգնոյն և յառաջաբերեալ, յաղթեաց պատերազմացն։ Բայց յետոյ հրապուրեալ 'ի կնոջէն իւրմէ Մաքսիմինայ 'ի դստերէն Դիոկղետիանոսի, յարոյց հալածանս եկեղեցւոյ․ և զբազումս վկայեալ, ինքն եղեփանդական բորոտութեամբ ըստ բոլոր ընկալեալ մարմնոյն ապականեցաւ վասն յանդգնութեանն։ Զոր ոչ կարացին բժշկել արիողական կախարդքն և մարսիկեան բժիշկքն․ յաղագս որոյ յղեաց առ

Տրդատ՝ առաքել նմա գիրս 'ի Պարսից և 'ի Հնդկաց, սակայն և այնք ոչ հասին նմա յօգուտ: Զոր և քուրմք ամենայն 'ի դիւաց խրատուէ հրամայեցին բազմութիւն տղայոց զենուլ յաւազանս և ջերմ արեամբ լուանալ և օծանել. որոյ լուեալ զլալին մանկանցն հանդերձ մարցն կականմամբք, գթացեալ մարդասիրեաց, զնոցայն լաւ վարկուցեալ քան զիւրն փրկութիւն: Յաղագս որոյ զփոխարէնն յԱստուծոյ ընդունի, յանրջական տեսութիւն Առաքելոցն առեալ հրաման սրբիլ լուացմամբ կենսատու աւազանին 'ի ձեռն Սեղբեստրոսի եպիսկոպոսի Հռոմայ, որ 'ի նմանէ հալածանացն թաքուցեալ էր 'ի Սորակտոն լեառնն. յորմէ և աշակերտեալ հաւատոց, զբռնաւորն ամենայն բառնալով Աստուծոյ յերեսաց նորա, որպէս համառօտ ուսուցանէ քեզ Ագաթանգեղոս:

## ՁԴ.

### Սպանումն Սլկունեաց 'ի ճենազնոյն Մամգունայ:

Ընդ հանգչելն Շապհոյ արքայի Պարսից 'ի պատերազմացն, և 'ի գնալն Տրդատայ 'ի Հռոմ առ սուրբն Կոստանդիանոս, պարապ առեալ խորհրդոց Շապհոյ, նիւթէ չարիս 'ի վերայ մերոյ աշխարհիս. թողեալ զհիւսիսայինսն ամենայն՝ ելանել 'ի Հայս, ժամ դնէ և իւր գալ Արեօք 'ի միւս կողմանէն: Ի սորին բանս հրապուրեալ Սլուկ նահապետ ազգին Սլկունեաց, զինքեանն սպանանէ զփեսայ՝ զծերացեալն Օտայ, որ էր 'ի տոհմէն Ամատունեաց, և մնուցող Խոսրովիդխտոյ քեռ թագաւորին: Եւ այն ինչ ընդ հուպ եկեալ մեծին Տրդատայ յարեմտից, և լուեալ զայս ամենայն, և գիտացեալ՝ թէ ոչ 'ի ժամադրութիւն եկն Շապուհ, խաղայ 'ի վերայ հիւսիսականացն: Իսկ նահապետ ազգին Սլկունեաց ամրանայր յամրոցին, որ անուանեալ կոչի Օղական, ապաւէն առնելով իւրեանց զընակիչս Սիմն կոչեցելոյ լերին. և ընդդիմացեալ թագաւորին, աղմկէր զերկիրն. և մերձ առ լերամբն ոչ թողացուցանէր այլում՝ պարապել գործոյ: Ասէ ամենայն նախարարութեանց տանս Հայոց արքայ. Որ ոք ածէ առ իս զնահապետն Սլկունեաց, տաց նմա յաւիտենական իշխանութեամբ զգեօղս և զդաստակերտս, և զամենայն իշխանութիւն ազգին Սլկունեաց: Զոր յանձն առնոյր Ճենազնեայն Մամգուն:

Եւ 'ի խաղալ թագաւորին զկողմամբք Աղուանից 'ի վերայ Հիւսիսականացն, գնաց Սմբատ ամենայն աղխիւն իւրով զկողմամբք Տարօնոյ, որպէս թէ ապստամբեալ 'ի թագաւորէն. և 'ի չու անկեալ, առաքէ գաղտագնաց հետևակս, զգացուցանելով նահապետի ազգին Սլկունեաց զգնալն թագաւորին զկողմամբք Աղուանից. Վտանգ մեծ է, ասէ, թագաւորին Տրդատայ, վասն որոյ գնաց զկողմամբք Աղուանից պատերազմել ընդ ամենայն լեռնականեայսն. վասն որոյ մեր է ժամանակ 'ի ճահ խորհել և գործել որ ինչ կամք են. զի խորհեալ եմ դաշնաւոր լինել ընդ քեզ՝ վասն արհամարհանաց իմոց որ 'ի թագաւորէն: Ընդ որ ուրախացեալ նահապետ ազգին Սլկունեաց, ընդունի զնա երդմամբ ուխտից. բայց յամուրն ոչ թողու, մինչև տեսանել՝ թէ որպէս պահիցէ զմտերմութիւնն երդմանց և դաշնաւորութեանցն: Իսկ ասացեալն Սմբատ ամենևին ջանացեալ զմտերմութիւն ցուցանել առ ապստամբին, հաւատարմացաւ նմա որպէս արդարեւ միամիտ գործակից. մինչև հրամայեաց նմա համարձակ մտանել յամուրն և ելանել:

Եւ յետ բազում վստահութեանն, 'ի միում աւուրց հաւանեցուցանէ զնահապետ ազգին Սլկունեաց ելանել արտաքս յամրոցէն և որսալ երէս. և 'ի միջամուխ լինել որսոցն՝ դիպեցուցանէ աղեղամբն ընդ մէջ թիկանցն, և կործան յերկիր զարկուցանէ զապստամբն: Եւ ընթացեալ իւրով արամբքն 'ի դուռն ամրոցին, առնէ զբերդն, կապելով զամենայն արսն որ ներքս: Նա և զազգն Սլկունեաց խորհեցաւ բառնալ, և կոտորեաց զամենեսեան. երկուք ոմանք փախստական անկան յաշխարհն Ծոփաց: Իսկ Սմբատ վաղվաղակի զգացուցանէ թագաւորին. ընդ որ ուրախացեալ Տրդատայ, գրէ հրովարտակ՝ իշխել նմա ամենայնի. և կարգէ զնա նախարար 'ի տեղի ապստամբին, անուանելով յանուն իւր Մամգունեան: Բայց մնացելոցն Սլկունեաց հրամայէ չխնայել:

## ՁԵ

Նահատակութիւնք Տրդատայ 'ի պատերազմին յԱղուանս, յորում միջակտուր արար զթագաւորն Բասլաց:

Իսկ թագաւորն Տրդատ ամենայն հպատակօք իջեալ 'ի դաշտն գարգարացւոց, պատահէ հիւսիսականացն ճակատու պատերազմի. և 'ի

խառնել երկոցունց կողմանցն՝ յերկու ճեղքէ զամբոխ թշնամեացն, ակայաբար շահատակելով: Ոչ կարեմ ասել զերագութիւն ձեռինն, որպէս անբաւք 'ի նմանէ յերկիր անկեալ թաւալգլոր խաղային. օրինակ իմն 'ի գեղեցիկ ցանցորդէ լի ձկամբք յերկիր թափեալ ցանցոյն, կայտռէին յերեսս երկրին: Զօր տեսեալ թագաւորին Բասլաց, մօտ հասանէ յարքայն. և հանեալ յապաղինէն զներդեայ քեռաապատ պարանն, և կորովութեամբ ձգեալ յետուստ կողմանէ, ճարպ դիպեցուցանէ յուս ձախակողմանն և յանութ աջակողմանն. զի էր վերացուցեալ զձեռն ածել ումեք սուսերաւ. և ինքն փակեալ վերա պահպանակօք, ուր ոչ գծէին նետք: Նա քանզի ոչ կարաց շարժել ձեռամբ զհօսյն, զանձինք առ երիվարին. և ոչ այնչափ ինչ շուրթափեաց մորակել զերիվարն, քան թէ ահեակ ձեռամբն 'ի ներդեայն անճապարեալ ոսկին, և սաստկութեամբ ուժոյն զիւրեաւ ցանցեալ, 'ի ճահ դիպեցուցանէր զերկայրին, և ընդ մէջ կտրէր զայրն և ընդ դոյդ պարանոցին զգլուխ երիվարին:

Իսկ զօրացն ամենայնի տեսեալ զթագաւորն իւրեանց և զզօրաւորն միջակտուր յայնպիսի ահաւոր բազկէ լեալ, 'ի փախուստ դառնային. զորս զհետ մտեալ Տրդատ, վարէ մինչև յաշխարհն Հոնաց: Եւ թէպէտ ոչ փոքր հարուածս իւրոց զօրացն եհաս, և բազմաց անկումն մեծամեծաց, յորում մեռաւ և սպարապետն ամենայն Հայոց Արտաւազդ Մանդակունի, սակայն Տրդատ անտի ըստ հայրութեան օրինաց պատանդս առեալ, դառնայ: Որով պատճառաւ միաբանեալ զամենայն հիւսիսի, հանեալ զօր բազում, գումարտակ արարեալ, խաղայ յաշխարհն Պարսից, դիմեալ 'ի վերայ Շապհոյ՝ որդւոյ Արտաշրի, չորս յիւրոցն առնելով զօրավարս, զՄիհրան առաջնորդ Վրաց, փառահացեալ փառն 'ի Քրիստոս հաւատոյն, և զԲագարատ ասպետ և զՄանաճիհր նահապետ ազգին Ռշտունեաց և զՎահան նահապետ Ամատունեաց: Բայց յաղագս հաւատոյ Միհրանայ և աշխարհին Վրաց ասել կայ մեզ առաջի:

## ՁԶ.

Յաղագս Նունէի երանելւոյ, եթէ որպէս եղև պատճառք փրկութեան Վրաց:

Կին ոմն, անուն Նունէ, յընկերաց որբոց հռիփսիմեանցն 'ի ցրուելոյն, փախստեամբ հասեալ յաշխարհն Վրաց 'ի Մծխիթայ, 'ի նոցա

քաղաքն Նախագահ, յոյժ ճգնութեամբ ստացեալ շնորհս բժշկութեան, որով և զբազում ախտաժետս բժշկեալ, և զգլխովին զկին Միհրանայ առաջնորդին Վրաց: Վասն որոյ հարցեալ զնա Միհրանայ, եթէ որո՛վ զօրութեամբ առնես զայս սքանչելիս, ուսաւ զքարոզութիւն աւետարանին Քրիստոսի. և ախորժելով լուեալ, պատմեաց իւրոց նախարարացն հանդերձ զովեստիւ: Եւ իսկոյն եհաս 'ի նա լուր սքանչելեացն, որ եղեն 'ի Հայս 'ի Թագաւորն և 'ի նախարարսն, և զընկերացն երանելոյն Նունեայ. ընդ որ հիացեալ, զրուցեաց երանելոյն Նունեայ, որով և ստուգագոյն ևս տեղեկացաւ զամենայն ոճով:

Եւ եղև ընդ աւուրսն ընդ այնոսիկ ելանել Միհրանայ յորս. մոլորեցաւ 'ի դժուարս լերանց խաւարեալ օդով, այլ ոչ տեսանելեօք, ըստ այնմ՝ թէ կոչէ զմէգ բարբառով, և դարձեալ՝ թէ զախ 'ի գիշեր մթացուցանէ: Այսպիսի խաւարաւ ըմբռնեալ Միհրան, որ եղև նմա առիթ մշտնջենաւոր լուսոյն. քանզի զարհուրեալ, յիշեաց զոր լուաւ վասն Տրդատայ, եթէ կամեցաւ ճանապարհորդել յորս, հասին նմա հարուածք 'ի Տեառնէ. զոր համարեցաւ՝ թէ և նմա այնպիսի ինչ դիպելոց է: Եւ երկիւղիւ մեծաւ պաշարեալ, խնդրեաց աղօթիւք լուսաւորիլ օդոյն և դառնալ խաղաղութեամբ, պաշտել զԱստուածն Նունէի խոստանայր. որում հանդիպեալ, կատարեաց զասացեալսն:

Իսկ երանելոյն Նունէի խնդրեալ արս հաւատարիմս, յղեաց առ սուրբն Գրիգոր, եթէ զի՞նչ հրամայեսցէ նմա գործել այնուհետև. քանզի յօժարութեամբ ընկալան Վիրք զքարոզութիւն աւետարանին: Եւ հրաման ընդունի՝ կործանել զկուռսն, որպէս ինքն արար, և կանգնել զպատուական նշան խաչին մինչև ցոր տալոց Տեառն հովիւ յառաջնորդութիւն նոցա: Եւ իսկոյն կործանեաց զամպրոպային պատկերն Արամազդայ. որ կայր մեկուսի 'ի քաղաքէն՝ գետոյն հզօրի ընդ մէջ անցանելով. զոր սովոր էին երկրպագել այգուն այգուն 'ի տանեաց իւրաքանչիւր, զի հանդէպ նոցա երևէր. իսկ եթէ ոք զոհել կամէր, անցեալ ընդ գետն առաջի մեհենիցն զոհէր:

Բայց 'ի վերայ նոցա յարեան նախարարք քաղաքին, եթէ զո՞վ արդեւք փոխանակ կռոցն երկրպագեմք. ուստի՝ եթէ նշանի խաչին Քրիստոսի. զոր արարեալ կանգնեցին 'ի վերայ վայելուչ բլրոյն յարևելից կողմանէ քաղաքին, մեկուսի բաժանեալ և նա փոքրագոյն գետով:

Եւ երկրպագեցին ամենայն բազմութիւնն ընդ առաւօտն նոյնպէս 'ի տանեաց իւրաքանչիւր։ Բայց յորժամ ելեալ 'ի բլուրն տեսին փայտ կոփեալ՝ ոչ ճարտարապ ինչ գործ, յոլովք քան զանկաւս արհամարհեցին, իբր թէ այնպիսեաւ լի իցէ ամենայն անտառն նոցա. և թողեալ 'ի բաց գնացին։ Իսկ բարերարին Աստուծոյ նայեցեալ 'ի գայթագղութիւն նոցա, առաքեաց յերկնից սիւն ամպոյ, և լցաւ լեառնն բուրմամբ անուշահոտութեամբ. և ձայն բազմութեան սաղմոսերգուաց լսելի եղև քաղցր յոյժ և ծագեաց լոյս տպաւորութեամբ խաչի ըստ ձևոյ և չափոյ փայտեղինին, և կալով 'ի վերայ նորա հանդերձ երկոտասան աստեղօք. յոր ամենեցուն հաւատացեալ, երկրպագեցին նմա։ Եւ յայնմ հետէ զօրութիւնք բժշկութեան կատարէին 'ի նմանէ։

Իսկ երանելին Նունէ եւ գնաց աշակերտել զայլ ևս գաւառն Վրաց յանապակ լեզուէն, շրջելով անպաճուճաբար և առանց աւելորդաց, օտարացեալ յաշխարհէ և որ 'ի սմա. կամ թէ ճշմարտագոյն ասել՝ 'ի խաչ ելեալ, 'ի կրթութիւն մահու զկեանսն առնելով, բանիւ վկայ բանին Աստուծոյ, և յօժարութեամբն իւրով՝ որպէս արեամբ պսակեալ։ Զոր համարձակիմք ասել, Առաքելուհի եղեալ, քարոզեաց 'ի Կղարջաց սկսեալ առ դրամբք Ալանաց և Կասբից մինչև 'ի սահմանս Մասքթաց, որպէս ուսուցանէ քեզ Ագաթանգեղոս։ Բայց մեք դարձցուք անդրէն 'ի պատմութիւն Տրդատայ յարձակմանն 'ի Պարս։

## ՁԷ

Պարտութիւն Շապհոյ և ակամայ հնազանդութիւն ընդ ձեռամբ մեծին Կոստանդիանոսի. և Տրդատայ ունել զԱկբատան, և գալ ազգականացն. և թէ յայնժամ եղև գիւտ փրկական փայտին։

Բայց Տրդատայ թէպէտ և զյաղթութիւն տուեալ էր, այլ 'ի հարկանելոյ զօրուն և 'ի բազում անկելոց նախարարացն, զանգիտեաց ինքեամբ յատուկ մարտնչել ընդ Շապհոյ, մինչև եհաս բազմութիւն զօրուն հռոմայեցւոց, որք ընդ տարեստան յարձակեցան. և 'ի փախուստ Շապհոյ՝ դարձան և յաւարի առին զամենայն երկիրն։ Քանզի և Տրդատ միահամուռ իւրովքն, և որք ընդ իւրովքն էին զօրքն, ընդ հիւսիսային կողմանս իշխանութեանն Պարսից դիմեաց տարեկան չուաւորութեամբ։

Յայնժամ գայ առ նա ազգականն իւր և հարազատ Կամսար, առաջին որդի Պերոզամատայ։ Այս Պերոզամատ է այն այրն, որ 'ի կատարելն Արտաշրի զցեղն Կարենեան Պահլաւին, փախուցեալ Բուրդայ ապրեցուցանէր։ Որոյ հասեալ յերիտասարդութիւն, 'ի պատիւ հօրն և 'ի վերայ զօրուն կարգի յԱրտաշրէ, առ 'ի պատերազմել ընդ խուժադուժ ազգսն ընդ այնոսիկ, ննջութեամբ խորհել արկանել զնա 'ի ձեռս բարբարոսաց։ Որոյ եղեալ այր քաջ, զքանչելապէս մղեաց զպատերազմունսն. և 'ի պարտել զՎզուրկն որ անուանէր Խաքան, նուաճեալ՝ տայ զդուստր իւր նմա կնութեան. Նա և այլ կանայս առեալ զմերձաւորս Արտաշրի, և բազում որդիս եղեալ, զօրացեալ բանութեամբ ունի զկողմանսն զայնոսիկ. Թէպէտ և էր 'ի համար Արտաշրի, այլ ոչ տեսանէ զնա։ Այլ 'ի մեռանելն Արտաշրի՝ ոչ հնազանդի որդւոյ նորա Շապհոյ. 'ի մարտնչելն 'ի բազում պատերազմունս յաղթէ, և 'ի մտերմացն Շապհոյ դեղակուր եղեալ մեռանի։

Ասեն նախնիք ժամանակաւ այլ ումն կեցեալ Վզուրկ Խաքան, որ թշնամութեամբ ընդ Կամսարայ որդւոյ նորա վարէր։ Իսկ Կամսարայ դժուարին վարկուցեալ 'ի մէջ երկուց հզօր թագաւորաց բնակել թշնամութեամբ, մանաւանդ զի և եղբարքն ոչ միաբանեցան ընդ նմա, խաղացեալ ամենայն ընդանեօք իւրովք և աղխիւ գայ առ Տրդատ մեր թագաւոր, եղբարց նորա առ Շապուհ երթալով։ Այս Կամսար ահագին քաջութեամբ նահատակեալ առ հարբն 'ի պատերազմունս, 'ի շահատակելն իւրում հարկանի յումեմնէ ակերբ զգլուխն. և վերացուցեալ մասն ինչ յոսկերէ սկաւառակին, բժշկեալ 'ի դեղոց, պակաս գոլով բոլորութիւն գագաթանն, անուանեցաւ Կամսար այնր աղագաւ։

Բայց Տրդատայ հաստատեալ իւր զեւթնպարապեանն Եկբատան երկրորդ, և վերակացուս յինքենէ թողեալ, դառնայ 'ի Հայս, ընդ իւր ածելով զԿամսար ամենայնիւքն։ Քանզի Շապուհ աղաչեաց զԿոստանդիանոս զյաղթողն, խնդրել զհաշտութիւն, և հաստատել խաղաղութիւն մշտնջենաւոր. զոր արարեալ սրբոյն Կոստանդիանոսի, յետ այնորիկ առաքեաց զՀեղինէ զմայրն իւր յԵրուսաղէմ 'ի խնդիր պատուական Խաչին, զոր և եգիտ իսկ զփրկական փայտն, հանդերձ հինգ բևեռօքն։

# ՁԲ.

*Կապումն Լիկիանոսի, և փոխումն արքունեացն 'ի Հռովմ, և շինել Կոստանդնուպոլսի:*

Ի բառնալն Աստուծոյ զբռնաւորսն ամենայն յերեսաց Կոստանդիանոսի՝ մեծարեաց նա զԼիկիանոս մեծութիւն յոյժ, և ետ նմա կնութեան զքոյր իւր ոչ համհայր, ծիրանեօք և պսակաւ կայսերական զարդարեաց զնա. և յերկրորդականս հաստուցեալ պատիւս. արքայ ամենայն արևելից կացոյց: Բայց զոր աստուածային բանն առ եբրայեցիսն անհնարին համարեալ՝ չարութեանն փոփոխումն, նոյն և աստանօր պատահի. ընձու անկարելի է զխայտուցն փոխել, և եթովպացւոյ զթխութիւն, նոյնպէս մարդոյ ամպարշտի զբարսն: Քանզի նախ առ 'ի հաւատսն գտանի դժող, և երկրորդ առ բարերարծն իւր ապստամբ: Յարոյց հալածանս եկեղեցւոյ, և նենգութիւն գաղտնի ընդդէմ Կոստանդիանոսի. նա և չարիս բազմազանս ամենեցուն հասոյց, որ ընդ իւրով իշխանութեամբն էին, ցանկացեալ այս և գարշելի աղտոր՝ ներկուածոյ ունելով զհերս. որ և զկին իւր 'ի մեծ նեղութիւն արգել, սակս տրփութեան երանելւոյն Գլափիւրայ, վասն որոյ սպան զսուրբն Բասիլեոս Ամասիոյ պոնտացւոց եպիսկոպոս:

Եւ իբրև յայտնեցաւ դաւն, և գիտաց թէ նմա լաւ ոչ լինի Կոստանդիանոս, ժողովեաց զօրս ընդդիմանալ պատերազմաւ: Եւ ցրտացեալ 'ի սիրոյն Տեառն մեր Թագաւորի, ակնածէր որպէս արդարև 'ի թշնամւոյ. քանզի գիտէր եթէ ատելի է արդարոյ ամենայն ամբարիշտ: Իսկ իբրև եկն յաղթողն Կոստանդիանոս, մատնեաց Աստուած 'ի ձեռս նորա զԼիկիանոս. զոր խնայեալ որպէս 'ի ծերունի և 'ի քեռայր, ետ տանել 'ի Գաղղիաս հանդերձ երկաթի կապանօք՝ դնել 'ի մետաղս, զի աղօթեսցէ առ Աստուած՝ որում մեղաւն, թերևս երկայնամիտ լիցի առ նա: Եւ ինքն հանդերձ որդւովքն մի թագաւորութիւն զհռովմայեցւոյն ցուցեալ, զքսանեմեակն 'ի նիկոմիդացւոց քաղաքին կատարեաց: Զի 'ի չորրորդ ամէ հալածանացն սկսեալ թագաւորել մինչև յերեքտասաներորդ ամն խաղաղութեան, զոր և այսօր տանէ աշխարհ:

Եւ ոչ պարտ վարկուցեալ 'ի Հռոմ դառնալ, այլ 'ի Բիւզանդիոն անցեալ՝ հաստատէր զարքունիսն, յանրջական իմն նախատեսութեանց

հրամայեալ. գերապայծառս իմն առնելով շինուածս, հնգապատիկ յաւե-
լեալ մեծացուցանէ: Քանզի ոչ ուրուք մեծի թագաւորի կայր 'ի նմա
ձեռնարկութիւնք այսպիսիք՝ բայց 'ի սակաւ ինչ իրաց, որպէս տիեզերա-
կալին Աղեքսանդրի Մակեդոնացւոյ, յորժամ անտի ընդդէմ Դարեհի
ապստամբեցաւ, և սակս այնորիկ շինեաց յիշատակ իւր զասացեալն
Ստրատիգեն. քանզի 'ի նմա զպատերազմականն յօրինեաց զկազմու-
թիւն: Զոր յետոյ Սեւերոս արքայ հռովմայեցւոց նորոգեաց. և ինքն
շինեաց զբաղանիսն 'ի տեղւոջ սեանն, որ ունէր սորագիր խորհրդական
անուն Արեգակն, ըստ Թրակացւոց բառի Զեւքսիպան, որոյ կոչմամբ
յորջորջեցան և բաղանիքն: Սա շինեաց և զտեսարանն և զգազանա-
մարտիկացն և զխաղալկացն, և զձիընթացսն ոչ կատարմամբ: Այլ Կոս-
տանդիանոս ամենապատիւ յարդարեաց, և անուանեաց Նոր Հռոմ, իսկ
աշխարհ կոչեաց զնա Կոստանդիանու քաղաք: Ասեն և զայս, եթէ
զաղանի եհան 'ի Հռովմայ զասացեալն Պաղադիոն քերածոյ, և եդ
զնա 'ի փորանին ներքոյ սեանն զառ 'ի յիւրմէ կանգնեալ. բայց այս մեզ
անհաւատալի է, այլոց՝ որպէս կամք իցեն:

## ՁԹ.

Յաղագս Արիոսի չարափառի, և ժողովոյն՝ որ եղև վասն նորա 'ի Նիկիա, և
սքանչելեացն՝ որ երևեցաւ 'ի Գրիգորիոս:

Ընդ այն ժամանակս երևեցաւ Արիոս աղեքսանդրացի, որ ուսոյց
չարաչար ամբարշտել, ոչ գոլ զորդի հաւասար հօր, և ոչ 'ի բնութենէ և
յէութենէ հօր, և ոչ ծնեալ 'ի հօրէ յառաջ քան զյաւիտեանս, այլ
օտար զմն և արարած և կրտսեր, և յետ ժամանակի գոյացեալ. որ ըստ
արժանեաց իւրոց ամբարիշտս այս Արիոս 'ի գարշելին ընկալաւ զսատա-
կումն: Վասն որոյ եւ հրաման յինքնակալէն Կոստանդիանոսէ՝ ժողով
լինել բազմութեան եպիսկոպոսաց 'ի Նիկիա բիւթանացւոց: Եւ ժողո-
վեցան Բիտոն և Բիկէնդ երիցունք 'ի Հռոմ քաղաքէ՝ ձեռնարկու-
թեամբ սրբոյն Սեղբեստրոսի, Աղեքսանդրոս Աղեքսանդրի, Եւստա-
թիոս Անտիոքայ, Մակարիոս Երուսաղէմի, Աղեքսանդրոս Կոստանդ-
նուպօլսի եպիսկոպոս:

Յայնժամ գայ հասանէ հրովարտակ ինքնակալին Կոստանդիանոսի առ մեր արքայն Տրդատ, զի զսուրբն Գրիգոր առեալ ընդ իւր 'ի ժողովն երթիցէ. զոր ոչ առ յանձն Տրդատ: Քանզի լուեալ էր զնմանանալն Շապհոյ ընդ հնդկաց թագաւորին, և ընդ արևելեանն Խաքանայ, և զզօրավարելն Ներսեհի՝ որ և թագաւորեաց ամս ինն, և Որմզդի՝ որ սա և նա թագաւորեաց ամս երիս նահատակութեամբք: Նաև 'ի կակածի եղեալ, զի մի՛ արդեւք պայմանին առիցէ բառ ամբոխութեան հեթանոսութեանն, վասն այնորիկ ոչ եթող առանց իւր զաշխարհս: Բայց և ոչ սուրբն Գրիգոր հաւանեցաւ երթալ, զի մի՛ զառաւել պատիւն վասն խոստովանողական անուանն 'ի ժողովյն կրիցէ. որպէս զի այսպէս փափաքանօք և մեծաւ փութով կոչէին: Այլ նոքա առաքեն փոխանորդ իւրեանց զԱրիստակէս, հանդերձ ճշմարիտ խոստովանութեամբ երկոցունց՝ գրով: Որոյ երթեալ հասանէր մեծին Ղեւոնդի. և հանդիպի յայնմ ժամու, զի մկրտէր զԳրիգոր զհայր Գրիգորի աստուածաբանի. որ իբրև ել 'ի ջրոյն, լոյս շուրջ փայլատակեաց զնովաւ, զոր ոչ ոք 'ի բազմութենէն ետես, այլ միայն Ղեւոնդիոս՝ որ մկրտէրն, և մերն Արիստակէս, և Եւթաղ Եդեսիոյ, և Յակոբ Մծբնայ, և Յոհան Պարսից եպիսկոպոս, որք նոյն շաւղօք ուղևորէին 'ի ժողովն:

## Գ.

Դարձ Արիստակիսի 'ի Նիկիոյ, և հաւատալ ազգականացն, և որ ինչ 'ի Գառնի շինուածք:

Երթեալ Արիստակէս ընդ մեծին Ղեւոնդի, հասանէ 'ի քաղաքն Նիկիացւոց, ուր եղեն ժողովեալ հարք երեքհարիւր և ութևտասն 'ի քակտումն արիանոսաց, զորս նզովեալ մերժեցին 'ի հաղորդութենէ եկեղեցւոյ. սոյնպէս և ինքնակալն արտասահմանեաց 'ի մետաղս: Ապա դարձեալ Արիստակեայ արժանահաւատ բանիւ, և քսան կանոնեալ գլխովք ժողովյն, գայ հանդիպի հօրն և արքային 'ի Վաղարշապատ քաղաքի: Ընդ որ ուրախացեալ սրբոյն Գրիգորի, աւել ինչ գլուխս յինքենէ 'ի կանոնս ժողովյն յաւելու, վասն առաւել զգուշութեան իւրոյ վիճակին:

Յայնմ ժամու և ազգային նոցա Կամսար մկրտի իւրայովքն հանդերձ՝ 'ի ձեռն մեծին Գրիգորի, արքայի ընդունելով 'ի ջրոյն, տալ

նմա ժառանգութիւն զմեծ դաստակերտն Արտաշիսի, որ այժմ առի Գորախանակերտ, և զգաւառն Շիրակ, որպէս ազգականի իւրում և մտերիմ հարազատի: Այլ նա ոչ աւելի բաւեաց քան զեւթն աւուրս յետ մկրտութեանն, վախճանի: Բայց թագաւորին Տրդատայ մխիթարեալ զգլուխ որդւոյն Կամսարայ զԱրշաւիր, զինքն փոխանակ ծնողին սահմանելով, ազգ զնա սերելով յանուն հօրն, և կարգէ 'ի թիւ նախարարութեանց: Յաւելու և այլ պարգևս, զքաղաքն Երուանդաշատ և զնորին գաւառն մինչև ցկատար ձորոյն մեծի. միայն զի 'ի մտաց նորա հեռացուսցէ զյիշատակ բնիկ աշխարհին՝ որ Պահլաւն կոչի, որպէս զի անվրդով զհաւատոն պահիցէ: Իսկ Արշաւիր առաւել սիրեալ զգաւառն, յիւր անունն անուանէր աշխարհունիս. քանզի յառաջ Երասխաձոր կոչիւր: Նա տայ զպատճառս գալստեան երկուց ցեղիցն, Պարթեւաց և պահլաւկաց:

Զայսու ժամանակաւ կատարէ Տրդատ զշինուած ամրոցին Գառնոյ, զոր որձաքար և կոփածոյ վիմօք, երկաթագամ և կապարով մածուցեալ. յորում շինեալ և տուն հովանոց, մահարձանօք, սքանչելի դրօշուածովք բարձր քանդակաւ, 'ի համար քեռ իւրոյ Խոսրովիդխտոյ, և գրեալ 'ի նմա զյիշատակ իւր հելլենացի գրով:

Բայց սրբոյն Գրիգորի դարձեալ 'ի նոյն լերինս, ոչ ումէք յետ այնր յաւելույր երևել մինչև ցվախճան:

## ԳԱ

Յաղագս մահուանն Գրիգորի և Արիստակեայ, և թէ էր աղագաւ կոչի լեառնն՝ Մանեայ այրք:

Յեւթն և 'ի տասներորդի ամի թագաւորութեան Տրդատայ գտաք նստեալ յաթոռ սրբոյ Առաքելոյն Թադէոսի զնախահայրն մեր Գրիգորիոս և բազ աւետարանին ծնող: Յետ լուսաւորելոյ զամենայն Հայս լուսով աստուածգիտութեան, և ջնջելոյ զխաւար կռապաշտութեանն, և լնլոյ զամենայն կողմանս եպիսկոպոսօք և վարդապետօք, սիրեցեալ զլերինս և զամայութիւն և զհանդարտութեամբ մնալ յինքեան կեալ, որպէս զի խօսեսցի ընդ Աստուծոյ անզբաղապէս. փոխանորդ իւր

թողլով զորդի իւր զԱրիստակէս, ինքն կալով 'ի գաւառին Դարանա-ղեաց 'ի լերինն Մանեայ այրս:

Այլ ասասցուք, թէ էր աղագաւ կոչի նա Մանեայ այրք: Քանզի էր կին ոմն Մանեայ անուն յընկերաց սրբոյ Հռիփսիմեանցն, որպէս զՆունէ Վրաց վարդապետուհի. որ ոչ շութափեաց հետեւել նոցա 'ի գալն առ մեզ, գիտելով զամենայն տեղիս՝ Աստուծոյ, բնակեցաւ 'ի լե-րինս յայսմիկ, յայրս ինչ քարանց. վասն որոյ կոչեցաւ անուն լերինն Մանեայ այրք. յոր այր յետոյ բնակեցաւ եւ սուրբն Գրիգոր:

Այլ թէպէտ եւ բնակեցաւ անդ, սակայն ընդ ժամանակս ժամա-նակս յայտնեալ շրջէր ընդ աշխարհս, հաստատէր 'ի հաւատս զաշակեր-տեալսն: Բայց իբրեւ եկն Արիստակէս որդի նորին 'ի ժողովոյն Նիկիոյ, այնուհետեւ ոչ եւս երեւեցաւ յայտնեալ ումեք սուրբն Գրիգորիոս: Վասն որոյ յիսկզբան քահանայանալոյ նորա, յեւթն եւ 'ի տասներորդ ամին թագաւորութեանն Տրդատայ մինչեւ ցքառասուն եւ վեց ամի նորին, յո-րում ոչ եւս յաւել ումեք երեւել, համարեալ թուին ամք երեսուն:

Եւ յետ նորա Արիստակէս ամս եւթն, 'ի քառասուն եւ յեւթ-ներորդ ամին Տրդատայ մինչեւ ցյիսուն եւ երրորդ ամի նորին, յորում եղեւ կատարումն Արիստակեայ: Զի արդարեւ էր սուսեր հոգեւոր ըստ առաքելումն, վասն որոյ թշնամի ամենայն անիրաւաց եւ զազրագործաց թուէր նա: Յաղագս որոյ եւ Արքեղայոս, որ էր կարգեալ 'ի վերակա-ցութիւն չորրորդն կոչեցեալ Հայոց, կշտամբեալ 'ի նմանէ, սպառնացաւ 'ի դիպող աւուր. եւ պատահեալ 'ի ճանապարհի 'ի Ծոփաց գաւառին, սպան զնա սրով. եւ ինքն գնաց փախստական 'ի Տաւրոս Կիւլիկեցւոց: Իսկ զմարմին երանելւոյն բարձեալ աշակերտացն, բերին յԵկեղեաց գաւառն, հանգուցանել 'ի Թիլն, յիւրում աւանին: Եւ յաջորդեաց զաթոռն երէց եղբայր նորին Վրթանէս, 'ի յիսուն եւ 'ի չորրորդ ամին Տրդատայ եւ անդր:

Բայց սրբոյն Գրիգորի 'ի Մանեայ այրն կեցեալ աներեւութաբար ամս բազումս, փոխի մահուամբ 'ի կարգս հրեշտակաց: Եւ հովուաց, գտին զնա վախճանեալ, 'ի նմին տեղւոջ թաղեցին, ոչ գիտելով թէ ով ոք նա իցէ: Վայելէր իսկ նոցա, որք Փրկչին մերոյ ծննդեան եղեն խոր-հրդածուք, լինել եւ աշակերտի յուղարկմանն սպասաւորք: Եւ ծածկեալ ամս բազումս աստուածային իմն գոգցես տեսչութեամբ, իբրեւ զՄովսէսն

զայն 'ի հնումն, զի մի 'ի պաշտօն առցի 'ի դեռահաւատ բարբարոսացն ազգաց: Իսկ յորժամ սերտեալ հիմնեցան հաւատք կողմանցս այսոցիկ, զկնի յետ բազում ժամանակաց յայտնեցաւ ճգնաւորի ումեմն Գառնիկ անուն կոչեցելոյ, և բերեալ եդաւ 'ի գեւղն Թորդան նշխարք սրբոյն Գրիգորի:

Սա, որպէս ամենեցուն յայտնի է, աշխարհաւ Պարթև, գաւառաւ Պահլաւ, յազգէ թագաւորեալ, զառուցեալ արշակունի, 'ի ցեղէ սուրենական, 'ի հօրէ Անակ կոչեցելոյ, յարևելից կողմանց աշխարհիս մերոյ՝ արևելք ծագեալ մեզ և իմանալի արեգական հոգևոր ճառագայթ, 'ի խորին շարութենէ կռապաշտութեան ելք, ճշմարիտ բարի և պատահալած, երանութեան և շինութեան հոգևորի առիթ, աստուածային արդարև արմաւենի անկեալ 'ի տան Տեառն և 'ի գաւիթս Աստուծոյ մերոյ ծաղկեալ. և այսպիսեօք և այսքանեօք ժողովրդովք բազմացեալ, 'ի ծերութիւն և 'ի պարարտութիւն հոգևորի զմեզ ժողովեաց 'ի փառս և 'ի գովեստ Աստուծոյ:

## ԳԻ

Յաղագս վախճանի Տրդատայ թագաւորին, ընդ որում և ողբերգական մեղադրութիւն:

Զսրբոյ և զմեծէ և զերկրորդ նահատակէ և զմերոյ լուսաւորութեանցն լուսաւոր վերակացուէ ճառելով, զ'ի Քրիստոսէ հանուրց եղելոցս ճշմարիտ թագաւորէ, հրաշափառագունիւ պարտ էր անցանել բանիւ, որպէս զգործակցէ և զհաւասար ճգնողէ մերոյ նախաշաւղի և լուսաւորութեանց նահապետի. որպէս թուեցաւ հաճոյ Հոգւոյն սրբոյ երիցացուցանել զիմ Լուսաւորիչն վկայութեանն միայնոյ վիճակաւ, 'ի վերայ բերեմ՝ թէ և առաքելութեանն. իսկ որ ինչ զկնի այսորիկ, զուգաբան և հաւասարագործ: Այլ զառաւելութիւն առեմ աստ զթագաւորին. քանզի խորհելն յաղագս Աստուծոյ և ճգնազգեցիկ լինել՝ զոյգ երկոցունց, իսկ նուաճել հաւանեցուցանողականաւ կամ բռնաւորականաւ բանիւ՝ առաւել էր թագաւորին շնորհ. քանզի ըստ հաւատոյն ոչ ինչ կասեցուցանէր զգործն: Այնր աղագաւ կոչեմ և զսա նախաշաւիղ ճանապարհ և լուսաւորութեանցն մերոց հայր երկրորդ: Բայց զի պատ-

մութեանց և ոչ զովեստից է ժամանակս, մանաւանդ զի և հանդներ-գութիւնս բառ իւրաքանչիւր պատմագրաց արտասանութեանց և ոչ յատուկ 'ի մէնջ շարադրեցաւ, անցցուք 'ի կարգ բանից՝ որ ինչ յաղագս սորա:

Աս յետ հաւատոյն՝ որ 'ի Քրիստոս, ամենայն առաքինութեամբք բացափայլեալ, եւս քան զեւս յաճախէր որ ինչ յաղագս Քրիստոսի գործ և բան. սատարելով և հաւանեցուցանելով զմեծամեծ նախարարսն, միանգամայն և զամենայն բազմութիւն ռամկին, լինել արդարեւ Քրիստոսի. որպէս զի վկայեսցեն հաւատոյն՝ ամենեցուն և գործքն: Այլ զհաստատութիւն կամիմ ասել, թէ և զամբարհաւաճութիւն ազգիս մերոյ յիսկզբանցն և այսր. որպէս անհամբոյր բարուց և ճշմարտութեան անհարազատ, կամ թէ բնութիւն ունելով զբարձրայօնութիւն և զկամակորութիւն, ընդդիմանան կամաց թագաւորին յաղագս կրօնիցն քրիստոնէականաց, զհետ երթալով կամաց կանանց և հարճից: Որում ոչ կարացեալ ներել թագաւորին, ընկեցեալ զերկրաւոր պսակն՝ զհետ ընթանայր երկնաւորին, արագ հասանելով 'ի տեղի սուրբ ճգնաւորին Քրիստոսի, ծակամուտ լեռնակեցիկ եղեալ:

Աստանօր ամաչեմ ասել զճշմարտութիւնն, մանաւանդ թէ զանօրէնութիւն և զամբարշտութիւն ազգիս մերոյ, և զմեծի ողբոց և արտասուաց արժանի սոցա գործս: Քանզի զհետ առաքեալ, կոչեն զնա՝ լինել ըստ կամաց նոցա, և ունել զթագաւորութիւն: Իսկ 'ի չհաւանել սորոյն՝ տան նմա արբուցանել, որպէս անդ ուրեմն 'ի հինան աթենացիքն Սոկրատայ զմոլեխինդն. և կամ թէ զմերն իսկ ասել, կատաղեալ երբայեցիքն ըմպելի լեղեալ խառնեալ Աստուծոյ մերոյ: Եւ զայս արարեալ չիջուցին յինքեանց զբազմափայլ ճառագայթն աստուածպաշտութեան:

Վասն այսորիկ 'ի վերայ իմոյս ողբալով ասեմ, որպէս Պաւղոս յաղագս իւրոյն, և թշնամեաց խաչին Քրիստոսի. բայց ասեմ ոչ զիմ բանս, այլ զՀոգւոյն սրբոյ: Ազգ թիւր և դառնացող, ազգ՝ որ ոչ ուղղեաց զսիրտ իւր, և ոչ հաւատարմացաւ Աստուծոյ ոգի նորա: Արք արամեանք, մինչև յե՞րբ էք ծանրասիրտք, ընդէ՞ր սիրէք զնանրութիւն և զանաստուածութիւն: Ոչ ծանեայք, զի սքանչելացոյց Տէր զսուրբս իւր. և ոչ Տէր լուիցէ յաղաղակել ձերում առ նա. բարկացեալ մեղան-

չեցէք, և յանկողինս ձեր ոչ զղջացարուք. քանզի զենէք զենումն անօ-րէնութեան, և զյուսացեալսն 'ի Տէր արհամարհեցէք: Վասն այսորիկ եկեսցէ ձեզ որոգայթ, զոր ոչ ծանեայք. և որսն զոր որսայցէք, ըմբռ-նեսցէ զձեզ, և նովին որոգայթիւն անկջիք: Այլ նորա անձն ցնծասցէ Տերամբ, և ուրախասցի 'ի փրկութեան իւրում, և ամենայնիւ ոսկերեամբ ասասցէ. Տէր, ո՞վ նման է քեզ:

Իսկ զի այսքիկ ճշմարիտ այսպէս, մխիթարեսցուք մերովք վտան-գիւքս և մեք. զի եթէ ընդ փայտ դալար զայս արարին, ասէ Քրիստոս, իսկ ընդ չորն զի՞նչ լինիցի: Արդ եթէ ընդ սուրբս Աստուծոյ, և որք 'ի թագաւորութենէ յաղագս Աստուծոյ զինքեանս նուաստացուցին՝ այս է, այլ զի՞նչ մեր բանս առ Աստուծոյ յաղագս 'ի ձէնջ վտանգիցս, որոց վտանգք և աղքատութիւն սեպհական է: Այլ սակայն ասացից: Ո՞ ոք 'ի ձէնջ թոշակս յաղագս մեր, ո՞վ ոք վարդապետացն մաղթանս, ո՞վ ոք բան յօժարեցուցանող կամ յորդորական, ո՞վ ոք յերթալս մեր բեռնա-բարձս, ո՞վ ոք 'ի գալն մերում հանգիստ, ո՞վ ոք տուն կամ օթևանոց մեզ պատրաստեաց: Թողից զայլն, զի և ոչ զլեզուս չարս և զոդխռու-թիւնս, հանդերձ մնոտի փառամոլութեամբն և կատաղի լեզուանու-թեամբն, սանձահարեցէք. այլ նիւթ նոցա անմտութեան զձեր ու-սումնատեացդ տալով բարս, բորբոքեցէք առաւել քան զհնոցն Բա-բելոնի:

Վասն որոյ իւրաքանչիւր ոք առանձինն է քուրմ և պաշտօնեայ, որպէս ասէ գիր. որպէս և այժմ խօսողք բազումք աստուածայնոցն, և զօրութեան մտացն ոչ հասուք. և խօսողք՝ ոչ ըստ հաճոյից Հոգւոյն, այլ ըստ օտարին: Վասն որոյ հիացումն իմն են ճառքս և սարսափելի՝ որոց միտս ունին. քանզի խօսի, որ խօսին զԱստուծոյ և զաստուածայինսն, և խորհուրդք խօսողին յօտարն հային: Զի ոչ վասն որոյ խօսին՝ կրէ զաշխատութիւնն, և ոչ մեղմով և հեզիկ, որպէս ուսան, թէ մի՛ ոք լուիցէ արտաքոյ զբարբառ նորա. այլ յաղագս փառաց մարդկայնոց, և ճայթեցուցանելով հնչեցուցանեն 'ի լսելիս մարդկան: Որ շատախօսու-թեանն հաւանք իբրև յաղբերէ դիմեն, որպէս ասաց ոմն 'ի հնոցն, և զկծեցուցանեն զամենայն գինարբուս 'ի հրապարակս: Ո՞վ ոք զնոսա ոչ ողբասցի, որ միտս ունիցի: Իսկ եթէ ոչ ոք զչարեսցի, ասեմ՝ թէ և ոք յորդորեն զնոսա այսպիսիս լինել: Արդելում ասել զՔրիստոսին, զտալն

վրէժս յարենէն Աբելի արդարոյ մինչև յարիւնն Զաքարիայ, որ կայ 'ի մէջ տաճարին և սեղանոյն։

Այլ աստանօր դադարեսցէ բանս, որպէս աշխատութիւն կրեալ՝ յականջս լինել խօսեցեալ մեռելոց։ Այլ պատմութիւնս յաղագս որդոյն Տրդատայ ճշմարիտ է. քանզի արբուցեալ նմա դեղ մահու, զրկեցան 'ի լուսոյ շնորհաց ճառագայթից նորա, որ թագաւորեաց ամս յիսուն և վեց։

# II.

# GRAMMATISCHE NOTEN.

Die nachfolgenden grammatischen Noten geben die Erklärung solcher Wortformen, Satzconstructionen und Textstellen, deren Verständniss für den Anfänger schwierig sein dürfte, beschränken sich aber innerhalb dieser Grenzen auf das Nothwendigste.

Die beigefügten Zahlen verweisen auf die betreffenden Seiten der armenischen Grammatik des Verfassers.

1. Kapitel. քեզ ist Dativ Sing. von դու. Declination dieses Gr. 32. որ ինչ „was immer, was immer für“; das Pron. relat. որ ist durch das Pron. indef. ինչ verallgemeinert. In dem Satze որ ինչ — գործք ist եղեն „sind geschehen“ zu ergänzen. առնելով, Instrum. des Infinitivi առնել, gibt die Art und Weise an, in welcher die durch գրեմ ausgedrückte Handlung geschieht. Ueber diesen Gebrauch des Instrum. Gr. 88 n° 2$^b$. Ueber den Ablativ 'ի թագաւորութենէ Gr. 86 n° 2. մինչև ց „bis zu“ loc. und temp. ց steht auch allein in der Bedeutung „zu“, um die Richtung auszudrücken, in welcher etwas geschieht. սրբոյ Gen. Sing. von սուրբ, առն Gen. Sing. von այր. Die Declination dieses Gr. 23. Das ն an առնն und մեծին ist Demonstrativpartikel; über diese und die beiden andern Gr. 35. ուրուք Gen. Sing. des Pron. indef. ոք Gr. 38. մի մի ոք „jeder einzelne“. 'ի նոցանէ Ablat. Plur. von նա Gr. 34. Արշակայ und Վաղարշակայ sind

Apposition zu dem Ablat. յարքայէ, եղբօրէ, Ablat. von եղբայր Gr. 25, ist Apposition zu Վաղարշակայ, daher fehlt bei ihnen das 'ի des Ablativs. նորա Gen. Sing. von նա. In dem Relativsatze զոր — թագաւորեցոյց ist ein aus dem Ablat. յԱրշակայ zu ergänzender Nom. Արշակ Subject; զոր ist Object und bezieht sich auf Վաղարշակայ. ինչ որ = որ ինչ s. oben. նորին Gen. Sing. von նոյն Gr. 35. որդի — զտէրութիւն. որդի Nom. statt Gen. որդ-ւոյ. „Durch das Empfangen des Sohnes die Herrschaft vom Vater." առնլով, Instr. des Infin. առնուլ, gibt sowohl die Art und Weise der Fortpflanzung der Herrschaft als auch den Grund zu անուանեցան an. Gr. 88 n° 2^b und n° 1^b. 'ի Հօրէ Abl. Sing. von Հայր Gr. 25. յԱրշակայ „nach Arschak, nach dem Namen Arschaks." Ueber diesen Ablat. Gr. 86. 5 n° 2. մեզ Dat. Plur. von ես Gr. 32. յետ տիրելոյն etc. „Nach dem Herrschen Alexanders über den Erdkreis." տիրելոյ, wie oben առն-լով, ist als Verbalsubstantiv construirt. Gr. 95. Vor Մակեդո-նացւոց ist unser „das" (Reich) zu ergänzen Gr. 83 n° 2. այնո-րիկ Gen. Sing. von այն Gr. 34. սորա տիրեալ Gen. absol. Gr. 84. սորա Gen. Sing. von սա Gr. 34. իւրում Dat. Sing. von իւր. Ueber den Dat. Sing. auf ում Gr. 16 n° c. 'ի քէն Ablat. Sing. von դու. ելցեն III. Plur. Fut. von ելանել, Aor. ելի.

2. թագաւորեալ Part. Aoristi statt Inf. Praes. թագաւորել, wohl Schreib- resp. Druckfehler, indess ohne Varianten. ամի Gen. Sing. statt Plur. nach Zahlen Gr. 78. յետ վախճանուն etc. „nach 60 Jahren des Todes" = 60 Jahre nach dem Tode. Հարեալ Part. Aor. von Հարկանել. Gr. 64. կացոյց Sing. incorrect statt Plur. կացուցին. Subject ist ein aus dem Gen. Հռովմայե-ցւոց zu ergänzender Nom. „die Römer" oder „dieselben". զի մի (des Inhaltes) „dass nicht". ոչ տալով „während (wogegen) zwar das Geben von Tribut (seinerseits) nicht stattfände, wohl aber das Geben von nur Geschenken". ամ ամ jedes Jahr. Zu տիրեալ ist է zu ergänzen. „So hat er 31 Jahre regiert und nach ihm" etc. եկն. III. Sing. Aor. von գալ. կալեալ Part. Aor. von ունիլ. Gr. 65. զգնալն. Inf. գնալ mit Nota Accus. զ und Demonstrativpartikel ն. դարձեալ Part. Aor. von դառնալ Gr. 64. նմա Dat. Sing. von նա. որպէս etc. „wie zu lernen ist aus der vierten, der wahrheitsgetreuen Erzählungen Herodots, welche (Erzählung = Buch) von der Theilung der ganzen Erde in 3 Theile

handelt und den einen etc. genannt hat". որում Dat. Sing. von որ Gr. 38.

3. այնմիկ Dat. Sing. von այն. աշխարհիս Gen. Sing. (mit Demonstrativpartikel ս) abhängig von dem vorhergehenden Accus. Plur. կարգս. տալ նմա իշխանութիւն statt տալով etc. explicativ und coordinirt zu հաստատանելով, ազգաւ „durch sein Geschlecht = erblich". և որ 'ի նմանէ ծնեալ ազգ = ազգի, որ etc. „und dem Geschlechte, welches von ihm erzeugt ist". 'ի նմանէ Ablat. Sing. von նա. լինել յանուն etc. wörtlich: „durch die Benennung nach seinem Namen Bagratunier zu werden" = „nach seinem Namen Bagratunier benannt zu werden". յառաջ քան զ . . . „eher, als" = vor. „Als" nach wirklichen und logischen Comparativen wird durch քան mit folgendem Accus. gegeben. Gr. 26. In dem Satze և նա etc. ist „erlebte" und in dem Satze իսկ 'ի ծայրս etc. „er wurde" oder „er war" zu ergänzen = Bagaret lebte am königlichen Hofe, aber wurde (er war) an der Grenze etc. Vor և որ 'ի Փրիւգիայ ist յաղագս պատերազմի zu ergänzen.

4. եթէ որպէս „wie". եթէ steht abundirend. նովաւ Instr. Sing. von նա. և որ ընդ նովաւ քաջք = քաջս, (Accus. Plur.) որ ընդ նովաւ (էին). որպէս թէ „wie wenn" = ungefähr. մօտ յԱր-մաւիր որ ասի բլուր = մօտ 'ի բլուր որ Արմաւիր ասի „nahe an dem Hügel, welcher Armavir genannt wird. ոչ ինչ verstärkte Negation „gar nicht". առ սահմանօք „an den — nicht die — Grenzen". Ueber diesen Instrum. Gr. 89 *d*. պարիկ Accus. Plur. von պար. միմեանց „einander". Gen. des Pron. recipr. Gr. 39. առ etc. „auf dem steinigten Hügel einer Anhöhe". առ բլրով Gr. 89 *d*. միոջ Gen. Sing. von մի. Ueber den Gen. Sing. auf ոջ Gr. 15. ձիգ ասպարիսօք միջոցաւ. Sie näherten sich einander bis auf gestreckte Pferdeläufe (lange Strecken) Zwischenraum". Instrum. Gr. 88 n° 2b.

5. զկնի անցանելոյ etc. „nach Verlauf vieler Tage des (seit dem) sich Befestigens beider Theile". երկոցունց Gen. von եր-կոքին. 'ի մերմէ. Ablat. Sing. auf մէ Gr. 17. քանզի այր etc. „denn er war ein beherzter Mann und (ein Mann) von breiten und untereinander proportionirten Gliedern, wobei er ein Entsprechendes des Körpers (einen entsprechenden Körper) und eine gewaltige Kraft besass". անդամովք Instr. Gr. 89 *e*. ունելով

Instr. Gr. 88 n° 2b. ստատիկ թուով Instr. Gr. 88 n° 1b. խմբի Gen. Sing. von խումբ. գնով Instr. Sing. von գին. որպէս 'ի „ähnlich dem".

6. առ ստորոտով „am Fusse". գեղեցիկ ինչ „zu etwas Schönem", յորժամ — երթիցէ „für den Fall, dass er sich nach Norden begebe". զհիւսիսով Instr. Gr. 89 *f.* երթիցէ III. Sing. Futur von երթալ Gr. 64. Futur für Conjunctiv. Gr. 92. լե-րամբք Instr. Plur. von լեառն. Ueber das զ vor հրաշալւոյ Gr. 81 n° 1 und 83 n° 3. որպէս զի — հաստատեսցէ „damit er bestellen könne". Futur für Conjunct. յիւրմէ Ablat. Sing. des Pron. person. der III. Person Gr. 32. իջանել Infinitiv für verb. finit. Gr. 95 n° 3. իւր Dat. „sich, zu sich".

7. բազում ինչ mit folg. Gen. „Viel von" = viel. որ ինչ շուրջ թագաւորութեամբ „was mit der Regierung zusammenhängt". Instr. Gr. 89 *f.* պյոցիկ Dat. Plur. von պյ. պարգեւելով ist mit doppeltem Accus. Նաղարար und պատիւ construirt. շնոր-հակալութիւն նմա „als Dankesbezeugung für ihn" Appos. zu պատիւ. իշխել, կոչել, ածել sind als Accusative coordinirt dem պատիւ zu fassen. շրջիցի III. Sing. Conjunct. Praes. von շրջիլ. In den Sätzen և զգեցուցանողս und և թիկնապահս ist das Prädicat „er nimmt" oder „er wählt" zu ergänzen. զձեռս ist Accus. und in der Bedeutung Hände oder Handschuhe oder als Eigenname zu fassen. „Er nimmt diejenigen, welche ihm die Hände bekleiden — die Handschuhe anziehen" — oder „er nimmt zu seinem (als seinen) Bekleider (Kammerdiener) den Tserres." Letztere Bedeutung resp. Uebersetzung ist wohl die richtige. In dem Satze և զԳնաբաղ ist als Prädic. das vorhergehende կարգէ zu ergänzen. Zu ստպէս ist „sind entstanden" zu ergänzen. և զԱրծրունիսդ գիտեմ etc. „ich kenne die Ardsrunier nicht als Ardsrunier, sondern als Adlerträger" = Der Name Ardsrunier ist eigentlich nicht Eigenname, sondern bedeutet Adlerträger. մանկան (Gen. von մանուկ) նիրհելոյ ist Gen. absol. oder Dat. abhängig von հակառակեալ. պատմանւոյ թալկացելոյ ist Dat. commodi. „zu Gunsten, günstig". անուն statt անուան, coordinirt dem զործոյն. կոչում անուան etwa „Rufname". Nach եթէ — ունիցիս ist առեմ zu ergänzen: „Wenn du auch nicht zu den leichtsinnigen Erzählern rechnest, so sage ich auch, dass etc." Zu den Accusativen nach առեմ sind Infinitive, etwa „bestellt wor-

den sein, gewesen sein“ zu ergänzen. Ueber den Accus. c. Inf. Gr. 81 n° 3. *վաշտելովք* „aus Soldaten bestehend“. *ստացեալ* zu ergänzen *էին* „welche erworben hatten“. *Պարսից թագաւորութեան* ist als Gen. absol. „zur Zeit der Perserherrschaft“ zu fassen. *յայլոց յարուցեալ գունդ և ոստան անուանել* „Man hat (die Perser haben) aus andern die Compagnien ausgehoben und Ostan genannt“. Subject ist ein aus *Պարսից* zu ergänzendes „man“ oder „die Perser“. *անուանել* Infin. für Verb. finit. *Սրաց* Gen. Plur. von *Սերք*. *որ — կոչի* zu übersetzen: „wo es (das erste Geschlecht) Sephdsug genannt wird“ oder „es (das alte Geschlecht) wird dort Sephdsug genannt“. Das *որ* bezieht sich auf *առաջինն* (*ազգ*).

8. *լինել* Inf. für Verb. finit. *թագաւորին* ist Gen. abhängig von dem als Verbalsubst. construirten Infin. *կարգելոյ* und Subject zu diesem. *զատուն* ist Object zu *կարգելոյ*. *որ* statt *զոր*. *զեզերբ* Instr. mit *զ* Gr. 89 *f*. *գիտեա* II. Sing. Imper. Aor. von *գիտել*. *ասեն սերեալ զազգ* Accus. c. Part. Gr. 81 n° 3. *երգէին նմա* man sang „zu seinem Gunsten“ von ihm. Zu den folgenden Infinitiven ist *զնա* als Subject zu ergänzen. *դորա* Gen. Sing. von *դա* Gr. 34. *'ի Հայկայ եթէ* etc. „ob er von Haik oder den vor diesem im Lande Gewesenen abstammt“. *իւրեաւ* Gr. 32 *չառեալ* = *ոչ առեալ*. Ueber *ոչ* Gr. 65. *զգեղջկաց* für *զմարդկան գեղջկաց* „mehr als der (Bevölkerung) der Dörfer“. *և գեղջկաց* ist Dativ abhängig von *Հրաման տալ*, ebenso *քաղաքացեաց*. Zu *եղև օրէնք* (Prädicat) sind *բնակել* und *գնալ* Subject. *փոխանորդ-լինել* „um Nachfolger zu sein“.

9. *զառ 'ի յաստուածոց գործ* „als ein von den Göttern (vollbrachtes) Werk“. *'ի* steht doppelt *'ի* und *յ*. Ueber den Ablat. mit *առ* Gr. 86 n° 2 *'ի սմանէ* Ablat. Sing. von *սա*. *արիաբար* tapfer. Ueber *բար* als Nachsilbe zur Bildung von Adverbien Gr. 66 n° 4. *կանայս* Acc. Plur. von *կին*. Gr. 24.

10. *եգիտ* III. Sing. Aor. von *գտանել* mit Augment. Gr. 50. *առասցուք* I. Plur. Fut. von *առնել* Gr. 64. *ետ* III. Sing. Aor. von *տալ* Gr. 64. *քի վկայ* etc. „denn er bezeugt das Vorhandsein eines Archivs aller Thaten etc. zu Edessa“.

11. *դրամ — հարկանէր* „er prägte sein Bild zu einer eigenen Münze“. Vor *Հայոց* ist *թագաւոր* zu ergänzen. *ցպատանի*. *ց* mit Accus. „an“, „zu - hin“. *անուն* = genannt. *սմա* Dat. Sing. von *սա*.

12. *մինչև ոչ գիտել նմա զհամար* „bis zum Nichtwissen die Zahl für dasselbe“ = dass er die Zahl für dasselbe nicht wusste. Nach *այլ* ist *հրաման տայ* zu wiederholen und dabei zu ergänzen: zur Erforschung der Zahl. *զԱրտեմիդեայ* etc. das (Bild) der Artemis etc., erklärend zu *պատկերս* „Bilder, nämlich das der Artemis“ etc. *յոյզք* — *եղեալ* und *աղմուկ* — *լեալ* sind Nom. absol. Gr. 80 n° 3. *կոտորեալ* ist wie ein Infinitiv als Verbalsubst. construirt. „Ich weiss nicht zu sagen, auf welche Veranlassung hin das Einanderermorden der Truppenmasse stattgefunden hat.“ *յիւրոց զօրաց* Abl. Gr. 86 n° 3. *զնոցին զհետ լինելով* „hinter ihnen seiend, ihnen folgend“. Der Gen. *նոցին* ist abhängig von *զհետ*. Dieses ist ein zum Abverb. gewordener Accus.; daher das *զ* vor *նոցին* erklärlich. Gr. 83 n° 3.

13. *տարակուսեալ մեր* Gen. absol. im Relativsatze. *մեր* Gen. Plur. von *ես* Gr. 32. *Կիւրոսի սպանեալ զԿրիւսոս և բարձեալ*. Partic. als Verbalsubst. construirt. *բարձեալ* Part. Aor. von *բառնալ*. *երկերիւր ամաւ յառաջ քան զ..* „um 200 Jahre früher, als“.. *միայն թէ էր վախճանեալ* „wenn er nur — gestorben wäre = wäre er doch nur — gestorben“! *դմին* Dat. Sing. von *դոյն* Gr. 35. *նոցայն* = *նոցա* mit Demonstrativpart. *ն*. *փոշւոյն մաքուր* ist Gen. absol. „da feiner Staub war“, oder Abl. ohne *'ի* „in Folge feinen Staubes“. *զմիջօրէիւ* „um die Mittagszeit“. Instr. Gr. 89 *f*. *եցոյց* III. Sing. Aor. von *ցուցանել*. *զօտարաց* Abl. Plur. von *օտար* mit *զ*. Gr. 87 n° 7. *զամենեքումբք* Instr. von *ամենեքին* mit *զ*. Declin. Gr. 40.

14. *զի մի* — *վարիցին* Conjunct. Præs. Pass. Gr. 93 n° 3. *իշխեցին կանգնեցին* = *իշխեցին կանգնել* „sie haben zu errichten gewagt“. *իւիք* Instr. von *իք*. Gr. 38. *'ի զոհից* Abl. Gr. 87 n° 5.

15. *իբր թէ* wie = gleichsam, beinahe. *Պոնտացւոյ Պիղատոսի* „des Pontius Pilatus“. Der Schriftsteller hält den Pontius Pilatus des Prænomens Pontius wegen für einen Pontier, aus Pontus Stammenden = der Pontier Pilatus, Pilatus aus Pontus.

16. In *'ի Արմաւիր* und *'ի յաւանի* steht *'ի* doppelt als *'ի* und *յ*. *'ի դառնալն իւրում* bei seiner Rückkehr. Der Inf. *դառնալ* ist hier als Substant. gebraucht. *զոր կալեալ էր Պոմպէի* „welchen Pompejus gefangen genommen hatte“. *Պոմպէի* ist Gen. Das Partic. *կալեալ* ist trotz des zugesetzten *էր* als Verbalsubst. construirt. Solche Constructionen sind nicht selten.

19. *ըռըշտունեաց* = *ռըշտունեաց*. Das erste *ը*, Vocalanstoss, steht der Häufung der Consonanten wegen; ebenso steht *ը* in *ըզատկառապեան*. *զքարի* wohl für *զքարիւ* „an einen Stein“. *ելից* III. Sing. Aor. von *լնուլ*. *ելեալ արտաքս քան զ . .* „weiter hinausgegangen als die Mauern, über die Mauern hinaus“. *ելեալ* Part. Aor. von *ելանել*.

22. *քորս* Acc. Plur. von *քոյր*. Gr. 24. *որ 'ի շէնս նմա գաւառաց* „welcher (Antheil) an den Dörfern der (genannten) Cantone ihm (war)“. *կեալ* ist Infinit. „leben“.

23. *նոցայոց* Gen. Dat. Plur. von *նոցայ*. Dieses ist Pron. poss. der III. Plur. „ihr“. *բայց 'ի* mit Abl. „ohne“. *որ միանգամ*. *միանգամ* dient zur Verallgemeinerung des *որ* = „welche immer“ alle, welche.

24. *զառաջին* etc. „das erste theilweise Tributpflichtigwerden der Armenier an die Römer“. Nur *զառաջին* ist Accus. u. zw. der näheren Bestimmung „das erste Mal“. *հարկիւ* ist Nom. *Հռոմայեցւոց* Dat. *ուրումն* Gen. von *ոմն* Gr. 38. *էառ* III. Sing. Aor. von *առնուլ* mit Augment. *է* für *ե* vor *ա*. Gr. 50. *պատահէ սպանեալ* „hatte eben getödtet“. *յինէն* Abl. von *ես*. *պէս պէս* „allerlei, verschiedene“. *և վախճան* etc. „und Zweck des Vorgehens war entweder sein (des Enanos) Verlassen das Gesetz oder das ihn (den Enanos) Aufhängen und das Vernichtetwerden seines (des Enanos) Geschlechtes“. *թողուլ*, *կախել*, *լինել* sind Subject und coordinirt. Zu *թողուլ* ist der Gen. *նորա*, zu *կախել* der Accus. *զնա* zu ergänzen.

25. *լցցէ* III. Sing. Fut. von *լնուլ*. *արասցէ* dasselbe von *առնել*. *չադաւէ* = *ոչ ադաւէ*. *Հօրէ* und *մօրէ* Abl. von *հայր* und *մայր* Gr. 25. *թագաւորութենէ* coordinirt dem *'ի մօրէ* und dieses näher bestimmend. „von einer Mutter (mütterlicherseits) aus dem Reiche der Meder“. *Վշտասպեաց* Gen. abhängig von *Դարեհի* „des Darius (aus dem Geschlechte) der Hystaspier“. Gr. 84 n° 4. *Հերովդի* Dat. abhängig von *երկրպագէ* wörtlich: „er küsst dem Herodes die Erde“. *տեառն* Gen. Dat. von *տէր* Gr. 23.

26. *զամին աւուրբք*. *ամին* Dat. Sing. von *այն* und steht incorrect statt des Instr. *ամին*. *աւուրբք*. Abl. Plur. von *օր* Gr. 22. *վասն որոյ 'ի Քրիստոս համարձակեցաւ* „wegen dessen, was er sich gegen Christus erlaubt hatte“. Attraction Gr. 79 n° 4.

THE INSTITUTE OF MEDIAEVAL STUDIES
ST. MICHAEL'S
COLLEGE
LIBRARY

